# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

18 ՆՈՅ. 1965


ՄԱՐԶԱԿԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ «ԱՐԱՐԱՏ»Ը

( Շար. Ա. էջէն )

*Վաստակաւոր վարպետ ու Հայաստանի հանրապետական մարզադաշտի պատասխանատու տնօրէն՝ Յարութիւն Քէհիէեան, Թերթիս սփիւռքի բաժնի խմբագրութեան.*



Յրթ. Քէհիէեան

— Ուրախ եմ «Արարատ» օրաթերթի միջոցաւ սփիւռքահայ մեր սիրելի ժողովուրդին յայտնելու՝ թէ Հայաստանի «Արարատ» Ֆութպոլին թիմը, երկրորդ ենթախումբի ախոյեանութեան տիրանալէ ետք, անցաւ Խորհրդային Միութեան առաջին բաժանմունքին։ Ընդհանուր դասաւորման մէջ, մեր տղաքը նուաճեցին 30 կէտ։ Իրենցմէ անմիջապէս յետոյ կուգայ «Ալմա - Աթա»յի կազմը 28 կէտով, *կը գրէ Յրթ. Քէհիէեան ու կ'աւելցնէ.*

— Հ.Մ.Մ.ի Պէյրութի Ֆութպոլի թիմի մեկնումէն ետք, «Արարատ» ախոյեանութեան գծով տարաւ փայլուն յաղթանակներ, այսպէս՝ «Իվանովայ»ին ան յաղթեց 1-0, «Չելյաբինսկի»ին՝ 1-0, Խարքովին՝ 4-1, Միշինյովին՝ 3-0, Գրոզնիին 3-1։ Յաջորդական այս հինգ յաղթանակները հայկական կազմին դիրքը զօրացուցին ընդհանուր դասաւորման մէջ, եւ կարեւոր դեր խաղացին ախոյեանական տիտղոսի նուաճումին գծով։

Անսահման խանդավառութիւն Հայաստանի ժողովուրդին մօտ։

*Յարութիւն Քէհիէեան, զգալիօրէն յուզուած տրամադրութեամբ, իր նամակին մէջ կը խօսի այն անսահման խանդավառութեան մասին, որ առաւելաբար շեշտուած է մայր հայրենիքի հայութեան մօտ, «Արարատ»ի ախոյեանութեան տիտղոսին տիրանալէ ետք։*

— Հ.Մ.Մ.ի պատուիրակութեան հետ Հայաստանի մէջ դուք ականատեսի աչքերով տեսաք թէ մեր ժողովուրդը ինչպէս զօրեղ սէր ունի հանդէպ Ֆութպոլին՝ ընդհանրապէս ու «Արարատ»ի թիմին մասնաւորապէս, *կ'ըսէ և կ'աւելցնէ.*

— «Արարատ»ի ախոյեան հռչակումէն ասդին, խանդավառութիւնը չափ ու սահման չունի մեր մայր հայրենիքի ժողովուրդին մօտ։ Իւրաքանչիւր քաղաքացի ուրախ է որ «Արարատ»ի Ֆութպոլիստները լիուլի արդարացուցին իրենց վրայ դրուած յոյսերը եւ իրենց տարած գեղեցիկ յաղթանակներով բարձր պահեցին դրօշը հայութեան եւ «Արարատ»ին։

*Յարութիւն Քէհիէեան չի մոռնար նաեւ մեր ժողովուրդին սփիւռքահայ հատուածը ու իր նամակը կը վերջացնէ այսպէս.*

— Վստահ եմ որ «Արարատ»ի այս յաղթանակը կ'ուրախացնէ նաեւ աշխարհով ցրուած, բայց միշտ Արարատով խանդավառ ամբողջ հայ ժողովուրդը, որուն քաղաքամայր Երեւանէն կ'ուղարկենք մեր եւ մեր մայր հայրենիքի մարզիկներուն ջերմ ողջոյնները։

«ԱՐԱՐԱՏ»

---

Պր. ՀՐԱՉ ՍԻՄՈՆԵԱՆ
ՕՐ. ՎԻՎԻԱՆ ՃԱՄՃԵԱՆ

Խօսեցեալք

13-11-65 Հելիոպոլիս

Մեր սրտագին շնորհաւորութիւնները խօսեցեալ զոյգին եւ իրենց ծնողաց։

---

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

### «ՃԱՀԱԿԻՐ»ԻՆ

Տէր եւ Տիկին Գարեգին Շամլեան, ուրախ առիթով մը, կը նուիրեն 100 ե.դ.։

### «ՃԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԷ

Պր. Յակոբ Խաչերեան (Գահիրէ) մէկ տարուան «Ճահակիր» կը նուիրէ իր քեռորդւոյն, Աբրահամ Համամճեանի (Երեւան)։

---

## ՊԱՇՏՕՆԵԱՅ Կ'ՈՒԶՈՒԻ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պէտք ունի հայերէն եւ արաբերէն լեզուի հմուտ պաշտօնեայի մը։ Թեկնածուներէն կը խնդրուի իրենց դիմումնագրերը եւ յարակից վկայագրերը անձամբ ներկայացնել Առաջնորդարան։

ԿՆԻՔ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆ - ԳԱՀԻՐԷ

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կիրակի, 21 Նոյեմբեր 1965, կ. ե. ժամը 6,30ին

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ
*ԵՒ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ*
*ՍԻՐՈՒԱԾ ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻ*

ՏԻԿԻՆ ԱՐԱՔՍԻ ՕՀԱՆԵԱՆԻ
ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

# «ՌՈԶԻԿ»Ը

(ՀԵՂ. ՏԻԿ Ա. ՕՀԱՆԵԱՆ)

*Խիստ հետաքրքրական կատակերգութիւն*
*3 ԱՐԱՐ ԵՒ 1 ՊԱՏԿԵՐ*

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

| | | |
|---|---|---|
| *Տիկ. Սոնիա* | (դերասանուհի) | *Տիկ. Իսքարա* |
| *Տիկ. Արտեմիս* | (Գոստանի քոյրը) | *Տիկ. Ա. Մ. Քիւփէլեան* |
| *Տիկ. Էլզա* | (Թոնիի կինը) | *Օր. Մ. Պալաեան* |
| *Տիկ. Նորա* | (Գոստանի աղջիկը) | *Օր. Ս. Պալաեան* |
| *Պր. Գոստան* | (գործարանատէր) | *Պր. Կ. Նիկողոսեան* |
| *Պր. Անտրէ* | (թատրոնի տնօրէն) | *Պր. Լ. Արթինեան* |
| *Պր. Էրնեստ* | (Ռոզիկի նշանածը) | *Պր. Հ. Պուղտանեան* |
| *Պր. Թոնի* | (Դատարկապորտ) | *Պր. Տ. Գմզմեան* |
| *Պր. Ֆիլիփ* | (Բեմավար) | *Պր. Գ. Նիկողոսեան* |
| *Պր. Էտի* | (դերասան մը) | *Պր. Մ. Մընըշեան* |
| *Պր. Ապտօ* | (Գոստանի ծառան) | *Պր. Զ. Գմզմեան* |
| *Օր. Ռոզիկ* | (համեստ դերձակուհի) | *Տիկ. Ա. Օհանեան* |

Յուշարար՝ Պր. Պերճ Քիւփէլեան

**ՄՈՒՏՔԻ ՏՈՄՍԵՐ 50, 30 ԵՒ 15 Ե. Դ.**

Ապահովեցէք եւ թուագրեցէք ձեր տոմսերը կանխաւ, դիմելով Հայկական Ընթերցարան, ամէն երեկոյ 8 - 10 կամ հեռաձայնելով թիւ 59706, 62590, եւ 43826

---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Արթին Մասալեան, բնիկ Պուրսայի Քամագայ գիւղէն, կնոջ անունը Պայծառ Վիզիրեան, որ հիմա կը կոչուի Կիւլհան, զաւակին անունը Մէյրի։ Առաջին պատերազմէն ետք Իզմիրի երջաններուն մէջն էր։

Եթէ մեռած է կամ ողջ՝ կը խնդրուի տեղեկութիւն ունեցողներէն իմացնել՝

Տիկին Զապէլ Պասմաճեան,
824 N Street
FRESNO - CALIFORNIA
( U·S·A· )

Հարիւր տոլար նուէր կը խոստանամ լուր տուողին։

Կը խնդրեմ որ արտասահմանի թերթերը արտատպեն եւ ցուցակը ինծի ղրկեն։

---

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
25 ՆՈՅ 1965

# ՄԱՐԶԱԿԱՆ

## ԿՈՓԱՄԱՐՏ

### ՔԼԷՅ ՅԱՂԹԱԿԱՆ

Երեքշաբթի, 23 Նոյեմբեր 1965, մեր ժամով առաւօտեան ժամը 5·30ին Նեվատա (ԱՄՆ) նահանգի Լաս Վէկաս քաղաքին մէջ տեղի ունեցաւ կոփամարտի (ծանր կշիռ) ախոյեանութեան գոտիի մրցումը Մոհամէտ Ալի Գ. Քլէյի և Ֆլոյտ Փաթերսընի միջեւ. Առաջինը աշխարհի ներկայ ախոյեանն է, իսկ երկրորդը նախկին ախոյեանը։

Երկար ատենէ ի վեր սպասուած այս շատ հետաքրքրական մրցումը վերջացաւ ի նպաստ երիտասարդ ախոյեան Քլէյի (23 տարեկան)՝ 12րդ ռաունտին։

Ծանր կշիռքի աշխարհի ախոյեանութեան տիտղոսին համար, յառաջիկայ տարուան սկիզբները, յաղթական Քլէյ պիտի մրցի Էրնի Թերրիլի հետ։

## ՖՈՒԹ-ՊՈԼ

### ԱՀԼԻ-ԶԱՄԱԼԷՔ

Ֆութպոլի լիկի մրցումները կանոնաւորապէս կը շարունակուին։

Անցեալ Ուրբաթ, 19 Նոյեմբեր 1965, Ահլիի դաշտին վրայ տեղի ունեցաւ 45 հազար հոգիի ներկայութեան, Գահիրէի երկու ամենամեծ ակումբներու խումբերուն միջեւ շատ հետաքրքրական և ջիղերու մրցումը, որ վերջացաւ հաւասար արդիւնքով, 2–2։

Մրցումը սկսաւ ճիշդ ժամուն ու երկու խումբերն ալ առանց ժամանակ կորսնցնելու անցան յարձակողականի՝ ի միտի ունենալով յաղթել։ 22 խաղացողներն ալ գիտնալով այս մրցումին կարեւորութիւնը՝ չխնայեցին իրենց ուժերը և ջանքերը, որպէսզի գոհացում տան իրենց ժողովուրդին։

Ահլիի խումբի խաղացողները աւելի հանդարտ խաղարկութիւն մը ունեցան և իրենց ճշգրիտ փասերով կը հասնէին Զամալէքի բերդին. բայց ոչ մէկ վտանգ՝ շնորհիւ Զամալէքի պաշտպանողական ուժին։ Ասիկա տեւեց 10 վայրկեան, որմէ ետք Զամալէքի խումբը քաջալերուելով իրենց զօրաւոր պաշտպանողականէն՝ անցաւ յարձակողականի, քանիցս վտանգելով Ահլիի բերդը ու 17րդ վայրկեանին Զամալէքի խաղացող Ահմէտ Մուսթաֆա, խլելով գնդակը Քամալ Մահմուտէն, յառաջացաւ դէպի Ահլիի բերդը՝ առանց որեւէ ընդդիմութեան ու բարձրացուց գնդակը ու դպչելով Միմի Ապտէլ Համիտին, գնաց Ֆարուքին որ շատ դիւրութեամբ նշանակեց Զամալէքի ա· կէտը, մեծ ուրախութիւն և խանդավառութիւն պատճառելով իր ժողովուրդին։

Ահլիի խաղացողները այս տեսնելով ամէն ջանք ի գործ դրին հաւասարութեան կէտը նշանակելու՝ հարուածելով Զամալէքի բերդը քանիցս և 37րդ վայրկեանին Մոհամէտէյնի մէկ լայնքին փասը անցընելով Զամալէքի յետսապահերէն՝ կը հասնի Մուսթաֆա Ապտէլ Ղալիի, որ արագօրէն կը տեղաւորէ գնդակը Շահինի բերդը, նշանակելով հաւասարութեան կէտը։ Ամբողջ դաշտը իրար անցաւ ուրախութենէն, ոչ միայն խաղացողները, այլեւ՝ ժողովուրդը։ Ա· կիսախաղը վերջացաւ 1–1։

Բ· կիսախաղը սկսաւ ու Ահլիի խաղացողները քաջալերուած ու ինքնավստահ յարձակողականի կ'անցնին ու 11րդ վայրկեանին Շերպինիի մէկ ճշգրիտ փասը Քամալ Մահմուտի՝ կը յառաջանայ մինչև Զամալէքի բերդը. Ահմէտ Ռիֆաաթ վտանգը տեսնելով ֆաուլ մը կ'ընէ ու իրաւարարը փենալթի կը սուլէ, որով կ'իրականանայ Մուսթաֆա Ղալիի կողմէ Ահլիի բ. կէտը։ Ահլիի խաղացողները այս կէտէն ետք իրենց խաղարկութիւնը կը փոխեն ու կ'անցնին պաշտպանողականի, զոր շատ կանուխ ըսկսան։

Ասիկա պատճառ եղաւ, որ Զամալէք կատաղօրէն անցնի յարձակումի և 30րդ վայրկեանին Ֆարուքի մէկ բարձր փասը կ'անցնի Ահմէտ Մուսթաֆային, ու գնդակը կը տրուի Համատա Իմամի, և ճիշդ այդ վայրկեանին Զամալէքի խաղացող Կոհարին՝ օֆ-սայտ կեցած էր ու իրաւարարի օգնական Մոհամէտ Ռիզգ բարձրացուցած էր դրօշակը, բայց իրաւարար Հիւսէյն Իմամ հաշուեց նշանակուած կէտը, որ կ'ըլլայ հաւասարութեան կէտը։

Զամալէք՝ հաւասարութեան կէտը նշանակելէ յետոյ, ամէն միջոց ձեռք առաւ որպէսզի խաղը հաւասար վերջանայ. մինչ Ահլիի խաղացողները կ'ուզէին որեւէ մէկ ձեւով 3րդ կէտ մը նշանակել, բայց ի զո՜ւր. ու խաղը վերջացաւ հաւասար արդիւնքով։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

# ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

## «ՃԱՀԱԿԻՐ»ԻՆ

Օր. Ալիս Տիլէնեանի ընդ Տր. Դանիէլ Զարուկեանի (Գանասա) բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ, Տէր եւ Տիկին Յովհաննէս Եմէնիճեան (Աղեքս.) կը նուիրեն 50 ե. դ.:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻՆ

Գեր. Տ. Զաւէն Ս. Չինչինեանի Եպիսկոպոսացման հրաւալի առիթով՝ կը նուիրեն.

Ընկեր եւ Տիկին Խորէն Իսկէնեան ե. դ. 100

Ընկեր եւ Տիկին Հայկ Օհաննէսեան ե. դ. 100

Տէր եւ Տիկին Վահան Չէչնէնեան ե. դ. 100։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆ
## ԳԱՀԻՐԷ

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

**Ս. ՀԱՅԱՍՏԱՆԻ 45ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ**

ՃԱՇԿԵՐՈՅԹ-ԽՐԱԽՃԱՆՔ

Կազմակերպութեամբ

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Նախագահութեամբ

ՎԵԹԵՐԱՆ ԸՆԿԵՐ ԽՈՐԷՆ ԻՍԿԷՆԵԱՆԻ

ՈՒՂԵՐՁ, ԲԱԺԱԿԱՃԱՌ

Գեղարուեստական ելոյթներ՝ մասնակցութեամբ տեղւոյս արուեստագէտներուն եւ սիրողներուն:

Հանդիսութենէն ետք՝ Պարանցիկ Երեկոյթ։

Ճաշի մասնակցողներէն կը խնդրուի արձանագրուիլ մինչեւ Շաբաթ, 27 Նոյեմբեր 1965 կէսօր, դիմելով սրահի քարտուղարութեան՝ ամէն երեկոյ ժամը 8էն 10, կամ հեռաձայնելով՝ 59706, 62590, 43826, եւ 915013 թիւերուն:

## ԴՐՈՇՄԱԹՈՒՂԹԻ ԲԱՐԵԿԱՄԻՆ ՍԻՒՆԱԿԸ

Ընդառաջելով բազմաթիւ ընթերցողներու փափաքին, բացած ենք դրոշմաթուղթի բարեկամին սիւնակը», օգտակար ըլլալու եւ դիւրացնելու համար նամակադրոշմի փոխանակութիւնը մեր բարեկամներուն միջեւ: Փափաքողներուն կը տրուին նորութեանց մանրամասնութիւնները։ Մասնակցելու համար գրել՝

«Tchahakir» Timbres – Poste, B·P· 2111, Le Caire (R·A·U)

ՃԱՏՐԱԿ

## ՈՐՈ՞Ն ՀԵՏ ՊԻՏԻ ԽԱՂԱՑ ԱՇԽԱՐՀԻ ԱԽՈՅԵԱՆ ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Երբ ճատրակի մեւօրեայ ախոյեաններուն մասին խօսուի, մարդ անպայման կը յիշէ Թիֆլիսի պիոներներու և դպրոցականներու Պալատը։ Արդարև, այդտեղ էր, որ Տիգրան Պետրոսեան սկսաւ իր ճատրակախաղի ասպարէզը, այստե՛ղ էր, որ ան Նոնա Կապրինտաշվիլէն ճատրակ խաղալ սորվեցաւ։ Եւ ճիշդ այս Պալատին մէջ էր, որ Հոկտեմբեր 31ին բացուեցաւ աշխարհի ախոյեան Տիգրան Պետրոսեանին դէմ խաղացող Թեկնածուներուն վերջին մրցաշարքը։

Պորիս Սպասքի (Մոսկուայի շրջանէն) և Միխայիլ Թալ (Ռիկայէն), որոնք ոչ հեռաւոր անցեալին Լենինկրատի ու Ռիկայի պիոներական պալատներու սաներն էին, տասներկու խաղերէ բաղկացած մրցում մը պիտի ունենան։

Այնուհետև, մրցումին գլխաւոր դատաւորը՝ Մեծ Վարպետ Ս. Ֆլոր, վիճակ պիտի քաշէ։ Առաջին խաղը (և ապա՝ բոլոր անզոյգ խաղերը) ճերմակ քարերով սկսելու իրաւունքը Մ. Թալին վիճակուեցաւ։

Կը մնար երկրորդներուն ընտրութիւնը, Վարպետ Ա. Կոպլենց ընտրուեցաւ Մ. Թալին համար, իսկ Մեծ Վարպետ Ի. Պոնտարեւսքի՝ Պ. Սպասքիին համար։

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ ԽԱՂԻ ՍԿՍԵԼԷ ԱՌԱՋ

Հանդիպումի մը նախօրեակին կատարուած յայտարարութիւններն միշտ ալ լակոնական կ'ըլլան և ընդհանրապէս քիչ բան կը քողարկեն։ Այսուհանդերձ, փորձութիւնը մեծ էր և որոշեցինք քանի մը հարցում ուղղել Մեծ Վարպետներ Պ. Սպասքիին և Մ. Թալին։



Տիգրան Պետրոսեան

Ահա թէ՛ ի՛նչ պատասխանեցին անոնք.

ՊՈՐԻՍ ՍՊԱՍՔԻ

— Ո՞վ պիտի յաղթէ։

— Երկուքէս մէկը։

— Ճատրակի Թագը Խորհրդային Միութեան մէջ պիտի մնայ անշուշտ։ Բայց որո՞ւ պիտի վիճակուի ան։

— Երկուքէս մէկուն։

— Արդեօք Տիգրան Պետրոսեան կրնա՞յ վստահ ըլլալ, թէ պիտի պահէ իր տիտղոսը։

— Եթէ Միխայիլ Թալ և ես հրաժարինք մրցումէն։

— Ի՞նչ կը սպասէք այս մրցումէն։

— Կը խորհիմ, թէ կուռ և լեցուն խաղ մը պիտի ըլլայ ան։ Մեզմէ իւրաքանչիւրը բնականաբար պիտի խորհի խաղերու որակին մասին։ Խաղին պիտի նպաստեն մեր բարեկամական յարաբերութիւնները և կանոնագրութեան մէջ կատարուած բարեփոխութիւնը։ Այժմ շաբաթը երեք խաղ պիտի ունենանք, փոխանակ չորսի, ինչպէս կ'ըլլար նախապէս։

ՄԻԽԱՅԻԼ ԹԱԼ

— Ինչպէ՞ս պատրաստուեցաք այս մրցումին։

— Ինծի կը թուի, թէ Պորիս Սպասքի աւելի դիւրաւ կրնայ պատասխանել այդ հարցումին։

— Գո՞հ էք ձեր առողջութենէն։

— Շատ առողջ եմ և մրցումէն վերջն ալ հիւանդանալու մտադրութիւն չունիմ։

— Կրնա՞ք թուել մեր ժամանակներու տասը լաւագոյն խաղացողներուն անունները։

— Սիրով պիտի ուզէի տասը խաղացողներու անուններ թուել, բայց կը վախնամ, քան ուրիշներ վշտանան, որովհետեւ անոնք ալ միւսներէն գէշ չեն խաղար։

«Արարատ»

## ՀԱԶԱՐ ՇԵՓՈՐ ՀՆՉԵՆ ԹՈՂ...

(Շար. Զ. էջէն)

որ այսօր ունի իր հայրենիքը Սովետական Միութեան ծիրին մէջ և ի զուր չէ անցած մեր մէկ միլիոնին նահատակութիւնը...։ Ունինք պետութիւն, ունինք դրօշակ։

Այժմ հայութիւնը եղբայրական 25 կամ 30 ժողովուրդներու հետ ձեռք-ձեռքի, նոր գաղափարներով և նոր երգերով արդար աշխարհ և արդար մարդկութիւն կը կերտէ, ուրպէսզի մէկ մարդ, մէկ կին և կամ մէկ երախայ ծարաւ, անօթի, առանց տեղի և առանց բնակարանի չմնայ․․․։

Հայոց պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով մեր ժողովուրդին ապագայով մտահոգուած չենք։ Մտահոգ չենք... յարաբերաբար։ Թուրքը Ա. աշխարհամարտէն օգտուեցաւ՝ վատաբար մեզ բնաջնջելու համար։ Բ. աշխարհամարտին կը սպասէր Սթալինկրատի անկման, արշաւելու համար Կովկաս և... բնաջնջելու մնացորդացը։ ԱՅԺՄ, Աստուած չ'ընէ, Աստուած չ'ընէ, Աստուած չ'ընէ, (թէև կը փափաքէի եօթն անգամ կրկնել...) եթէ Գ. աշխարհամարտ ծագի և Թուրքը աւելին օգտուիլ կարծելով փորձէ հայութիւնը բնաջնջել, թո՛ղ վստահ ըլլայ, որ ինք պիտի աղէտուի անխուսափելիօրէն։

Ասիկա ոչ պատրանք է և ոչ ալ պոռոտախօսութիւն, այլ համոզո՛ւմ և հաւա՛տք անսասան։

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ, ածու փոքր, ժամանակը մեզի ի նպաստ կ'աշխատի, մեր ցեղին ֆիզիքական անմահութիւնը ապահովուած է։ Բառասունհինգամեակին առթիւ յարգանքով կը խոնարհիմ բնիկ և հայրենադարձ դասական ազնիւ հայ ժողովուրդին առջեւ, որ տոկաց շա՜տ բաներու և կերտեց սովետական մեծ հայրենիքին մաս կազմող Սովետական Հայաստանը՝ Սո՛ւրբ Հայաստանը․․․։ Սրբացաւ հայրենի հողը նահատակներուն արիւնով և կռանուեցաւ մեր ապրելու կամքը։

Փա՜ռք հայրենի ժողովուրդին, որ անխորտակելի վէմն է և զարմանահրաշ փոսը մեր կենսունակութեան։

Փա՜ռք Ս. Հայաստանի 45-ամեակին։

Փա՜ռք ասպնջական Արաբական Միացեալ Հանրապետութեան։

ՄԿՐՏԻՉ ԱՆԴՐԱՆԻԿ

Աղեքսանդրիա

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻՆ ԲԱՑՈՒՄԸ ԵՒ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՃԱՌԸ

( Շար. Ա. էջէն )

զ) Արտադրութեան համապատասխան սահմանով պէտք է ըլլայ սպառումը և բաց չգոյանայ։

է) Ընկերվարութիւնը չի հանդուրժեր որ մարդը շահագործուի մարդէն. այս ուղիով՝ չըլլալ երազատես կամ ցնորամիտ, սխալ մեկնաբանութիւն չտալ՝ սկզբունքին. աշխարհ մեզի կը նայի։

ը) Ցարգելու համար դեմոկրատականութիւնը, ընկերային հիմնարկները այսուհետեւ պիտի ենթարկուին ժողովուրդի հակակշռին և ատով պիտի ունենանք մընայուն արդիւնքներ։

Ամենէն կարեւորը աշխատանքն է՝ բոլոր մարզերուն մէջ, իբրև պայման յառաջդիմութեան։ Անհրաժեշտ է ինքնավստահութիւն ունենալ։ Մեր ժողովուրդին աշխատանքի կարողականութեան մասին մեծ է իմ հաւատքը։

Արաբաշխարհին մէջ առաւելութիւններ ձեռք ձգած ենք։ Միջազգային մարզին մէջ մեծ են մեր վարկն ու հեղինակութիւնը։ ԱՄՀի արտաքին քաղաքականութեան հիմն է արդարասիրութիւն, խաղաղասիրութիւն և խաղաղ գոյակցութիւն ։Ապա՝ ոչ-յանձնառութեան ուղեգիծ։ Օրինակ կ'առնեմ մեր յարաբերութիւնները Սովետական Միութեան հետ։ Մեր կապերը կը սերտանան, որովհետեւ կը տիրէ փոխադարձ յարգանք՝ իրարու գոյավիճակի հանդէպ։ Վերջին այցիս՝ հաստատեցի որ սովետական ժողովուրդները մեծ ճիգ կը թափեն ազգային ազատագրական շարժումներու ի նպաստ։ Կը յարգեն ազատագրական մեր պայքարը։

Ամերիկայի հետ դժուարութեան մէջ ենք Իսրայէլի հանդէպ անոր բարեացակամ կեցուածքին պատճառով։ Երկուստեք չի պակսիր՝ իրար հասկնալու ճիգը,, սակայն։

Մարաջախտ Ամէրի այցը՝ Ֆրանսա, մեզի նոր հաւանականութիւններ կ'ընծայէ։ Զօր. Տը Կօլի վերաբերմունքը ԱՄՀի հետ՝ արդիւնաւոր գալիքը կ'աւետէ։

Մարդկութեան մէկ չորրորդը ներկայացնող Չինաստանը կարելի չէ կղզիացնել։ Վարչապետ Չու Էն Լայի հետ անհրաժեշտ տեսած ենք մեր ժողովուրդներուն մօտեցումը իրարու։

Մեծն Բրիտանիոյ հետ մեր յարաբերութիւնները բարելաւուած են, նոր կառավարութիւնը նոր հընարաւորութիւններ չէ ստեղծած։

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

16 ԴԵԿՏ. 1965


## ՖՈՒԹՊՈԼ

### ՋԱՄԱԼԵՔ-ԹԵՐՍԱՆԱ 1-1

Անցեալ Ուրբաթ, Գահիրէի մէջ տեղի ունեցաւ չատ հետաքրքրական մրցում մը՝ Գահիրէի երկու զօրաւորագոյն խումբերուն միջեւ (Զամալէքի և Թերսանայի) և վերջացաւ հաւասար արդիւնքով։

Ա. կիսախաղին հետաքրքրական խաղարկութիւն մը ցոյց տուին երկուստեք և քանիցս յարձակումներ տեղի ունեցան՝ սպառնալով երկու բերդերուն ալ և 23րդ վայրկեանին Մուսթաֆա Ռիատ անցնելով Ահմէտ Մուսթաֆայէն՝ ուժգին և ինքնավստահ հարուածով մը գնդակը տեղաւորեց Շահինի բերդին մէջ ու Ա. կիսախաղը վերջացաւ 1ով 0՝ ի նպաստ Թերսանայի։

Բ. կիսախաղին երկու խումբերուն ալ խաղարկութիւնը փոխուեցաւ և անոնք սկսան խաղալ չատ մեծ կոչտութեամբ, ինչ որ ներելի չէ, մինչեւ որ Էֆֆաթ՝ 36րդ վայրկեանին նշանակեց Զամալէքի ի նպաստ հաւասարութեան կէտը և արդիւնքը անփոփոխ մնաց մինչև վերջաւորութիւնը։

### ԱՀԼԻ ԿԸ ՅԱՂԹԷ ՍԷՔՔԱ ՀԱՏԻՏԻ 2-0

Մրցումը սկսելէն առաջ Ահլիի դաշտը լեցուած էր մարզասէրներով, որոնք եկած էին ներկայ ըլլալու իրենց խումբի նոր կազմին խաղարկութեան։ Խումբը երկուշաբթէ ի վեր կը գտնուէր Զօրակայանը՝ Մուշիր Ապտէլ Հաքիմ Ամէրի հրամանով։

Ծիչդ ժամանակին մրցումը սկսաւ բուռն ծափահարութիւններով, ու անմիջապէս՝ Ահլին անցաւ յարձակողականի, մերթ ընդ մերթ սպառնալով Սէքքա Հատիտի բերդը և հանդիպելով զօրաւոր պաշտպանողականի մը, որ կասեցուց այդ յարձակողականը. բայց 27րդ վայրկեանին՝ Ահլիի խմբապետ Ռիֆաաթ էլ Ֆանակիլի անցուց գնդակը Ուսամայի (սուտանցի նոր խաղացող), որ ղայն անցուց Մոհամմէտէնի, որ իր կարգին գնդակը տեղաւորեց Սէքքայի բերդը՝ ապահովելով Ահլիի Ա. կէտը։ Այս տեսնելով՝ Սէքքայի խաղացողները անցան հակայարձակողականի, բայց ամէն յարձակողական եւ քչուեցաւ շնորհիւ Ապու Դէտայի, Տերպինի, Միմի Ապտէլ Համիտի և Իպրահիմ էլ Քէպերի (սուտանցի նոր խաղացող) ու Ա. կիսախաղը վերջացաւ 1ով 0՝ ի նպաստ Ահլիի։

Բ. կիսախաղը սկսաւ նոյն թափով երկուստեք, բայց քանի մը վայրկեան յետոյ Ահլիի խաղը քիչ մը դանդաղեցաւ ու այս առիթէն օգտուելով Սէքքայի խումբը բաւական սպառնաց Ահլիի բերդին։ Ահլիի խումբը շուտ սթափեցաւ ու դարձեալ սկսաւ յարձակողականի և 27րդ վայրկեանին Մոհամէտէն ստացաւ գնդակը ու տեղաւորեց Սէքքայի բերդին մէջ, ապահովելով Ահլիի Բ. կէտը։

33րդ վայրկեանին Սէքքայի ամենախորամանկ խաղացող Ապու Սէրիհ բարձրացուց գնդակը բերդին առջեւ ու Սէքքայի ամենակարճ խաղացող Նախլա գլխու ուժգին հարուածով մը գնդակը դուրս հանեց ու վերջին վայրկեանին Սէքքայի խմբապետ Քամալ Էթման յառաջացաւ գնդակով ու անցնելով Ապու Դէտայէն հարուածեց գնդակը ուժգնօրէն, բայց դուրս ելաւ ու վերջացաւ այս գեղեցիկ մրցումը՝ 2ով 0 ի նպաստ Ահլիի. ուրեմն այս զօրակայանի մէջ անցած ժամանակը չատ մեծ օգտակարութիւն ունեցաւ Ահլիի խաղացողներուն։ Մաղթենք որ այս նոր ոգիով շարունակեն անոնք յաջորդ մրցումները՝ բարձր պահելով իրենց անունը։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

### ԵԳԻՊՏ. ԲԱՆԱԿԻ ԽՈՒՄԲԸ ՊԷՅՐՈՒԹ ՊԻՏԻ ԱՅՑԵԼԷ

Սաֆայի հրաւէրով կազմակերպուած ֆութպոլի մրցումներուն համար Պէյրութ պիտի գայ նաև Եգիպտոսի բանակի խումբը Դեկտ. 26–30ին, կը գրէ «Արարատ»։ Եգիպտ. պատուիրակութիւնը բաղկացած պիտի ըլլայ 18 հոգիէ, որոնց մէջ կան Ահմէտ Քասէմ, Հասան Շազլի (Թերսանա), Ահմէտ Էֆֆէթ, Մոհմ. Եհիա, Սամիր Քաթիպ. Նապիլ Նասէյր (Զամալէք), Եուսրի Ահմէտ (Իսմայիլի), Սայէտ Քաթալ (Օլիմփիք), Մունիր Ժիրիս (Մասրի), Թահա Իսմայիլ (Ահլի), Մահմուտ Պաքր Ուաքատ (Օլիմփիք), Մոհմ. Ս. Համամա (Մահալլա), Հասան Իպրահիմ (Փ. Ֆուատ), Սէիտ Ապպաս Սէիտ (Պանք Միսր)։

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Տիկին Մարի Վանեան (Խարթում) իր ողբ. ամուսնոյն Շաւարշ Վանեանի յիշատակին կը նուիրէ 250 ս.դ.։

Օր. Մատլէն Ճիհանեան (Աղեքս.) իր ողբ. ծնողաց յիշատակին կը նուիրէ 100 ե.դ.։

Օր. Վիվիան Ճամճեանի ընդ Պր. Հրաչ Սիմոնեանի նշանախօսութեան ուրախ առթիւ՝ փան խնդակցութեան Տէր և Տիկին Աստուր Պալեան կը նուիրեն 100 ե. դ.։

Առ ի գնահատութիւն թերթիս ազգային-ընկերային ուղղութեան, Պր. Գէորգ Տէյիրմէնճեան (Աղեքս.) կը նուիրէ 100 ե.դ.։

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Նոյեմբեր 29ի հանդիսութեան ընթացքին և առ ի գնահատութիւն, տեղւոյն վրայ եղած են հետեւեալ նուիրատուութիւնները.

Բ. ՑԱՆԿ

| | |
|---|---|
| Ոմն (Մ.Յ.) | ե.դ. 500 |
| Տէր և Տիկին Ն. Պալաեան | 500 |
| Տէր և Տիկին Զ. Պալաեան | 500 |
| Տէր և Տիկին Հ. Օհաննէսեան | 300 |
| Տէր և Տիկին Ե. Վեցիկեան | 300 |
| Տէր և Տիկին Կ. Տէմիրճեան | 200 |
| Տէր և Տիկին Խ. Թաշգարուլեան | 200 |
| Տէր և Տիկին Վ. Գազանճեան | 200 |
| Ոմն. (Վ.Պ.) | 200 |
| Պր. Արմենակ Էլպէկեան | 100 |
| Պր. Գրիգոր Նիկողոսեան | 100 |
| Պր. Պերճ Թերզեան | 100 |
| Պր. Յովհաննէս Եաղճեան | 100 |
| Պր. Խոսնակ Շամլեան | 100 |
| Պր. Նորայր Տէօվլէթեան | 100 |
| Պր. Եդուարդ Զարդարեան | 100 |

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

### ԳԱՀԻՐԷ

Շաբաթ, 18 Դեկտեմբեր 1965, կ.ե. ժամը 9.15ին

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ԺԱՊԱՒԷՆՆԵՐՈՒ

ա) Երեք գեղեցկուհիները

բ) ՍԻՐՏԸ ԵՐԳՈՒՄ Է (Հայախօս գունաւոր ժապաւէնը)

Ներկայացուցչութեամբ Վահրամ Փափազեանի, Հրաչեայ Ներսէսեանի, Ասթիւր Այտընեանի և Օր. Լ. Յովհաննիսեանի։

ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԷՆ ԵՏՔ՝ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

Հայ հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի

### ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ 1966 Ի ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ

★ «ԵՐԵՒԱՆ» ★

ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑԸ

ԳՈՒՆԱՏԻՊ 12 ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐՈՎ,

ՆՈՒԱԶԱԳՈՅՆ ԳԻՆ 30 Ե. Դ.

### «ՋԱՀԱԿԻՐ»Ի ՕՐԱՑՈՅՑԸ

4 ԳՈՅՆԵՐՈՎ, «ՕՖՍԷԹ» ՏՊԱԳՐՈՒԹԵԱՄԲ

ՀԱՅՐԵՆԻ ՆԿԱՐ ՄԸ 35 × 50 ՍՄ. ՄԵԾՈՒԹԵԱՄԲ

Վիմագրութիւն՝ արուեստագէտ ՍԻՄՈՆ ՍԱՄՍՈՆԵԱՆԻ

եւ 50 × 15 սմ. ամսաթերթիկներով

ՆՈՒԱԶԱԳՈՅՆ ԳԻՆ՝ 50 Ե. Դ.

## ՔԱՆԻ ՄԸ ՌՈՒՊԱՅԱԹ ՕՄԱՐ ԽԱՅԵԱՄ-ԷՆ

(Ֆիցճերըլտի թարգմանութեան հետեւողութեամբ)

Ռամազանի օրը վերջին: Իրիկնամուտ:
Ես յամրաքայլ՝ մի բրուտի մթայ խանութ,
Սպասելով ի յայտ գալուն նոր մահիկին
Փարչ, կուժ, սափոր, կաւ, ամբոխին հետ միասին։

Զարմանալի, հոն կար փարչ մը առնող լայն ու նչ
Եւ ուրիշներ կը խօսէին, ոմանք ալ մունջ·
Յանկարծ մէկը աղաղակեց՝ խոժոռադէմ,
Բրուտն ո՞վ է, սափորն ո՞վ է, ըսէք խնդրեմ:

Այս խօսքերէն ուրիշ մէկն ալ առնելով ուժ՝
Շատ տխուր — ի զուր չէր որ շինողն ինձ կուժ
Անարգ կաւէն առաւ նիւթս, ճարտարօրէն,
Եւ ոտնակոխ, ըլլալիքս հող է նորէն:

Կաւատան մէջ՝ պահ մը տիրեց լռութիւն սառ
Մինչ անդիէն, ճաքած փարչ մը կը մրմրար,
— Ի՞նչ կը ծաղրէք վատ վիճակըս, ինչո՞ւ համար,
Իմ ի՞նչ յանցանք բրուտին ձեռք երբ կը դողար:

Ասուլիսէն շատ ազդուած, սափոր մը կաղ
Պոռաց տեղէն — ի՞նչ է պատճառ, ինչո՞ւ այս խաղ.
Մանուկն անգամ երբ կոտրէ յետոյ կուլայ
Մեզ քանդողին արդեօք աչքէն արցունք կու գա՞յ...:

Ռամազանի օրը վերջին: Իրիկնամուտ,
Ես տապով գինեպանին մթայ խանութ
Սպասելու ի յայս գալուն նոր մահիկին
Գինով լեցուն սափորներու հետ միասին։

Տաղաչափեց ՀԱՅԿ ԿԱՐԻՆԵԱՆ

Աղեքսանդրիա

## ԱԼԻՍ ՍԱՓՐԻՉԻ

### ՆՈՐ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Փարիզեան թատրոններու Իսթանպուլահայ տաղանդաւոր արուեստագիտուհիներէն Ալիս Սափրիչ, վերջերս յաջող ելոյթներ ունեցած է հեռատեսիլէն ու մեծապէս գնահատուած։



Նկարին մէջ կը տեսնուի Իսթանպուլահայ արուեստագիտուհին, Մօլիէրի մէկ թատերգութեան «Մաթիլտ»ի տպաւորիչ դերով։

## ՄՈՌԱՑՈՒՄ

Մեր նախորդ թիւով տրուած «Դաւը» թատերգութեան գերակատարներուն մէջ մոռցուած է Օր. Սոսի Գարայեանը, որ ստանձնած էր Լէյտի Պեվըրլի (Ֆէյ)ի դերը, որ կատարեց յաջողութեամբ։

## ԳԱՆԱՏԱՅԻ ՀԱՄԱՇԽԱՐՀ. ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԵՒ ՀԱՅԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ

Համաշխարհային ցուցահանդէսը, որ կը կոչուի «ԷՍՓՕ», կը բացուի այս քաղաքին մէջ, ապրիլ 1967ին, որ կը զուգադիպի Մոնրէալի հիմնումին հարիւրամեակին։

Այս մեծ ցուցահանդէսը վաւերացուած է միջազգային բարձրագոյն յանձնախումբի կողմէ ու աւելի քան 80 երկիրներ պիտի մասնակցին, որոնց կարգին նաեւ Թուրքիա:

Բոլոր մեծ երկիրները, Միացեալ Նահանգներ, Սովետական Միութիւն, Անգլիա, Ֆրանսա, Ափրիկէ ու Ասիոյ երկիրները կը մասնակցին այս ցուցահանդէսին։

Սովետական տաղաւարի ճարտարապետը հայ մըն է, Գ. Գ. Մնտոյեանց, որ հոս կը գտնուի ներկայիս։ Սովետական տաղաւարին մէջ պիտի ներկայացուին Սովետական Հանրապետութիւնները և Հայաստան:

Գանատայի մէջ գտնուող բոլոր այլացեղ ժողովուրդները պիտի արտօնուին ցուցադրութիւններ կատարել իրենց տոհմիկ պարերով ու երգերով: Ասոնց կարգին Հայեր եւս պիտի արտօնուին բերելու իրենց մասնակցութիւնը այս հանդիսութեանց:

ԼԵՒՈՆ ՔԷՇԻՇԵԱՆ
«Մարմարա»

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

Դեկտ. 26ին խմբագրատանս մէջ հաճոյքն ունեցանք ընդունելու այցը լիբանանահայ ուսուցչուհի Օր. Շուշան Պօյաճեանի եւ իր եղբօր՝ Ընկ. Սեպուհ Պօյաճեանի, որ ծանօթ է Հ.Մ.Մ.ի իր ազգային գործունէութեամբ, շարունակելով մեկտեղ համալսարանական իր ուսումը։

Մեր երիտասարդ հայրենակիցները եկած են իբրեւ զբօսաշրջիկ՝ տեսնելու ԱՄՀի տեսարժան վայրերը եւ պիտի մնան մօտ 10 օր։

## Մ. Ա. Կ. 20ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Շար. Դ. էջէն)

Ծագոյն խոչընդոտն է ուժի քաղաքականութիւնը, որ բացայայտօրէն, երբեմն ալ գաղտնի՝ կը գործէ ՄԱԿէն ներս։ Ծայրայեղ գաղափարապաշտութիւնը և թունդ չովէն ազգայնականութիւնը բնական թշնամիներն են ՄԱԿի Ուխտագրին։ Արդեօք մինակ պատերազմով և ահաբեկչութեա՞մբ կարող ենք աշխարհի մէջ խաղաղութիւն և արդարութիւն հաստատել. արդեօք մենք պատասխանատուութեան գիտակցութիւնը պիտի չունենա՞նք՝ մեր կոչման, այլ միայն անձնատուր պիտի լինինք փոթորիկներու, անկարող՝ խաղաղութեամբ տիրանալու ապագային։

Շեշտելով խաղաղութեան համար աշխատելու կարիքը՝ Նախագահ Ճանսըն ՄԱԿի տարեդարձին ըսաւ. «Հոս գտնուող անդամները իրենց բոլոր ճիգերն ու ջանքերը պէտք է կեդրոնացնեն խաղաղութեան համար, որովհետեւ այս կազմակերպութեան գոյութիւնը այս նպատակաւ միայն կ'արդարանայ. վէճերն ու գժտութիւնները պէտք է սրահէն դուրս կարգադրել, ոչ թէ զայն ընել երկարատեւ վէճերու և կռիւներու թատր մը։ Ուր որ վէճեր կան՝ աշխատելու ենք միջոցներ գտնել օրինաւոր կերպով կարգադրել»։ Որքան որ Ճանսըն խաղաղութեան առաքեալ ուզեց ձեւանալ, սակայն պատուիրակներու հակառակութիւնն ու դատապարտանքը հրաւիրեց իր վրայ: Արդէն Գուպայի պատգամաւորը, դեռ Ճանսըն չսկսած իր բանախօսութիւնը, սրահէն դուրս ելաւ. Իսկ Արեւելեան Եւրոպայի պատուիրակներն անոր խօսքերը նկատեցին սոսկ կիրակնօրեայ դպրոցի դաս մը, լեցուն պարապ խոստումներով, սուտ ու փուճ խօսքերով։ Իսկ դուրսը մեծ թափօր մը կազմուած՝ ցուցատախտակներով՝ կը պահանջէր Նախագահ Ճանսընը դուրս վտարել և ձեռք առնել Վիեթնամի խաղաղութեան հարցը։

Հակառակ ՄԱԿի նկատմամբ եղած յուսախաբութեան, համաշխարհային զանազան դաւանանքի 2 միլիառ անդամները եւս գրկած էին իրենց ներկայացուցիչները՝ անջատօրէն տօնելու համար ՄԱԿի 20րդ տարելիցը։ Կաթողիկէ, Բողոքական, Արեւելեան Օրթոտոքս, Պուտտայական, Հրեայ, Հինտու և Մահմետական համայնքները։ Պապ Պօղոս 6րդ բացատրելով այս կրօնական անջատ համագումարին իմաստը՝ ըսաւ. «Որքան տեղին ու յարմար է, որ կրօնականներ եւս բերեն իրենց մասնակցութիւնը 20 տարի առաջ ՄԱԿի Ուխտագրի յիշատակումի տօնախմբութեան»։

Քսան տարիները՝ կրնայ լինիլ որ կազմակերպութեան մը կեանքին մէջ երկար ժամանակ մը չէ։ Սակայն անիկա երկար ժամանակ մըն է՝ ցուցնելու իր կարողութիւնը՝ խաղաղութիւն հաստատելու մարզին մէջ։ Այսօր աշխարհի առջեւ ՄԱԿը ի յայտ բերաւ իր անկարողութիւնը իբրեւ խաղաղութեան ռահվիրայ։

Ուրեմն Միացեալ Ազգերու Կազմակերպութիւնը այսօր մարդկութեան համար սոսկ յուսախաբութիւն մը եղաւ, ուրիշ ոչինչ:

Շիքակօ Ա. Վ.

